Պրոլետարներ բոլոր երկրների՛, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 20 (51)

ՀՍԽՀ ԺԿԽ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 20 (51)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ԴԵՊԻ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության տարեդարձը տոնում են բոլոր յերկրների աշխատավորները, վողջ առաջավոր ու պրոգրեսիվ մարդկությունը: Այդ օրը բոլոր ճնշվածների և շահագործվողների հայացքներն ու հույսերն ուղղված են դեպի միջազգային պրոլետարիատի հայրենիքը՝ ԽՍՀՄ-ն:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը բոլոր ճնշվածներին ցույց տվեց կապիտալի լծից ազատագրվելու ուղին:*

*Աշխատավոր մարդկությունն այժմ գիտե, թե ինչպիսի ճանապարհով պետք է պայքարել հաղթելու համար: Բոլոր ճնշվածներն ու շահագործվողները տեսնում են, թե ինչպիսի յերջանիկ ու բերկրալի կյանքի հասցրեց* Լենինի- Ստալինի

կուսակցությունը մեր Խորհրդային Մեծ Միության մեջ բնակվող բոլոր ժողովուրդներին:

Խորհրդային իշխանությունը միակ իշխանությունն է աշխարհում, որը հետևողականորեն պայքարում է ֆաշիզմի և պատերազմի վտանգի դեմ: Խաղաղության իր քաղաքականությամբ նա պաշտպանում է աշխարհի բոլոր ժողովուրդների կենսական շահերը: Մեր հայրենիքը միակ երկիրն է, որը կանգնած է մարդկային կուլտուրայի, պրոգրեսի պահպանության դիրքերում և առաջ է շարժում մարդկությունը:

Մեր պատմական հաղթանակները համայն աշխարհի աշխատավորության հաղթանակներն են: Մեր պայքարը— այդ և նրանց պայքարն է: Մեր մեծ տունը դա ընդհանուր, միջազգային տուն է: Մեր Ստալինյան Մեծ Սահմանադրությունը— բոլոր ճնշվածների դրոշն է, դա պայքարի կոչ է, դա— սոցիալիզմի հաղթանակի դրոշն է:



## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Մեծ են այն հաղթանակները, որ մենք ձեռք ենք բերել սոցիալիստական հեղափոխության 21-րդ տարում: Դա մեր երկրի զարգացման նոր շրջանի, «սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիստական հասարակությանն անցնելու»[1]) շրջանի տարին էր:

Այդ տարում մեր հայրենիքի ժողովուրդներն իսկական, սոցիալիստական դեմոկրատիայի հիման վրա ընտրեցին իշխանության իրենց գերագույն օրգանները: Մարդկության պատմության մեջ առաջին անգամ իրագործվեց իրոք ընդհանուր, հավասար, ուղղակի ընտրական իրավունքը գաղտնի քվեարկությամբ:

Ընտրությունները ցույց տվին, թե ինչքան ամուր ու անքակտելի յե բոլշևիկների կուսակցության կապը ժողովրդի հետ: Այդ կապը կոփել է միլիոնավորներին

1) Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմության, (ռուս. հրատ.), էջ 331:

ճնշումից և շահագործումից ազատագրելու համար կուսակցության մղած անդուլ պայքարի բազմաթիվ տարիներին: Այդ կապն ամրացել է նրա համար, որ Լենին-Ստալինի կուսակցությունն իր համար օրենք է համարում ունկնդրել մասսաների ձայնին, հասկանալ նրանց պահանջներն ու կարիքները, պատրաստ լինել ոչ միայն սովորեցնելու մասսաներին, այլև սովորել մասսաներից: Լենինյան-ստալինյան կուսակցության հենց այդ հատկություններն են, որ նրան դարձրել են իրոք մասսայական, միլիոնավոր բանվորներին և բոլոր աշխատավորներին իր հետևից տանելու ընդունակ կուսակցություն:

Մեր կուսակցության համար չկա ավելի խորթ բան, քան մասսաներից կտրվելը: Նա այդ ապացուցել է ժողովրդի կենսական շահերի համար մղած իր բազմամյա պայքարով: Դրա՛ համար ժողովուրդն այնքան միահամուռ կերպով լիակատար վստահություն ցույց տվեց իր կուսակցության նկատմամբ իշխանության գերագույն օրգանների ընտրություններին:

Ընտրությունները ցույց տվին, որ ամ-



բողջ խորհրդային ժողովուրդը չի ճանաչում այլ դրոշ· բացի բոլշևիկյան կուսակցության դրոշից: Ընտրությունները ցուցադրեցին ՍՍՀՄ ժողովուրդների մեծ բարեկամությունը և խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը:

Խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը մեծագույն ուժ է: Այն ժամանակ, յերբ կապիտալիստական աշխարհում օր-օրին ավելի ու ավելի յեն խորանում հակասությունները աշխատավորների և շահագործողների միջև,— մեր յերկիրը հանդես է գալիս իբրև աշխատավորների միասնական, յեղբայրական ընտանիք, ամուր՝ որպես գրանիտ:

Խորհրդային ժողովրդի միասնությունն արդեն իսկ իր մեծ պտուղներն է տալիս մեր շինարարության թափի, մեր կուլտուրայի բարգավաճման մեջ: Այն ցույց տըվեց իր ահեղ ուժը Խասան լճի շրջանում պատերազմի ճապոնական պրովոկատորների դեմ մղված մարտերի օրերին: Այդ ուժն իրենց վրա կզգան թշնամիները, յեթե նրանք համարձակվեն խանգարել մեր խաղաղ աշխատանքը: Նրանք կիմանան այն ժամա-

նակ, թե ինչ է նշանակում բանակի և թիկունքի միասնությունը: Ի՞նչ է նշանակում 170 միլիոնանոց խորհրդային ազատ ժողովրդի միասնությունը:

Կոմունիստների և անկուսակցականների բլոկի լիակատար հաղթանակն ընտրությունների ժամանակ՝ բոլշևիկների կուսակցության տրիումֆն էր, վորը Խորհրդային Միության ժողովուրդներին բերեց դեպի սոցիալիզմի հաղթանակը: Դա խորհրդային ժողովրդի տրիումֆն էր, վորը վերջ դրեց մարդու միջոցով մարդու շահագործմանը: Միևնույն ժամանակ դա համաշխարհային կոմունիզմի վիթխարի հաղթանակն էր, քանի վոր ընտրությունների արդյունքները բոլոր երկրների բանվորներին և աշխատավորներին վոգեշնչեցին հետագա պայքարի՝ ընդդեմ ֆաշիզմի:

## ՖԱՇԻԶՄԻ ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ-ԲՈՒԽԱՐԻՆԱԿԱՆ ԱԳԵՆՏՆԵՐԻ ՋԱԽՋԱԽՈՒՄԸ

Անցած տարում խորհրդային ժողովուրդը հաջողությամբ արմատախիլ արավ ժողովրդի թշնամիներին, երկիրը մաքրեց



լրտեսներից, դիվերսանտներից, հայրենիքի դավաճաններից: Աջ-տրոցկիստական բլոկի դատավարությունը մեկ անգամ էլ ամբողջ աշխարհի առաջ բաց արավ աշխատավորների ամենաանարգ, ամենանենգ թշնամիների՝ տրոցկիստների և բուխարինականների գարշելի դեմքը:

Բուխարինական- ռիկովական բանդայի դատավարությունն ամբողջ խորհրդային ժողովրդին ցույց տվեց, թե ինչ էին պատրաստում նրա համար ֆաշիստական այդ վարձկանները: Նրանք մահ էին պատրաստում բանվոր դասակարգի և գյուղացիության ծաղիկ մասի համար, ֆաշիստական ստրկացում՝ խորհրդային ժողովուրդների համար: Նրանք տենչում էին արյան մեջ խեղդելու սոցիալիզմի նվաճումները, միայն թե վերականգնեյին կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը:

Շպիոնաժ, դիվերսիաներ, տեռոր, բանվորների մասսայական թունավորումներ, գնացքների խորտակումներ, բանվորների և կոլտնտեսականների շարքերից լավագույն մարդկանց սպանություններ—ահա՛ խորհրդային ժողովրդի դեմ նրանց կող-

միջ մղվող պայքարի արյունռուշտ մեթոդները:

Տրոցկիստները և բուխարինականները-մարդկության այդ գարշելի տականքները-ամբողջապես միացել էին սպիտակգվարդիական սպաների և գեներալների հետ, թաքնված կուլակության մնացորդների հետ, հակահեղափոխական յեկեղեցականների և սեկտանտների հետ, բուրժուական նացիոնալիստների հետ, էսէռների և մենշևիկների բեկորների հետ: Հին աշխարհի բոլոր մնացորդները, միացան իրենց դատապարտվածությունը, միացան և սկսեցին դիմել խորհրդային իշխանության, խորհրդային ժողովրդի դեմ պայքարելու ամենահուսահատ միջոցներին: Նրանք վաճառվեցին ֆաշիստական հետախուզություններին, ամբողջապես միաձուլվեցին նրանց հետ:

Խորհրդային ժողովուրդը դասակարգային պայքարի մեծ դպրոց է անցել: Նա հաստատապես յուրացրել է բոլշևիկների կուսակցության ցուցումները, իր առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ցուցումներն այն մասին, որ քանի դեռ գոյություն ունի կապիտալիստական շրջապա-



տումը, կլինեն լրտեսներ, վնասարարներ և դիվերսանտներ: Խորհրդային ժողովուրդն ամբողջապես ոտքի կանգնեց ֆաշիզմի տրոցկիստական- բուխարինական ստոր ագենտների դեմ, խորհրդային պանծալի հետախուզությանն օգնելով արմատախիլ անելու և ոչնչացնելու նրանց պիծակի բները:

Բայց հարկավոր է հիշել, որ թշնամին զենքը ցած չի դրել և չի դնելու. Նա կփնտրի նոր կանալներ, նոր ուղիներ իր ագենտուրան արմատավորելու համար: Մեր աչալրջությունից կախված կլինի ժողովրդի թշնամիներին ժամանակին մերկացնելը, թշնամիներ, որոնք ձգտում են ջլատել մեր թիկունքը, տենչում են պատերազմի դեպքում ճակատը բաց անել ինտերվենտների բանակների առջև: Դրա համար էլ ավելի քան յերբևիցե խորհրդային ժողովրդին անհրաժեշտ է հեղափոխական աչալրջությունը:

Օտարերկրյա հետախուզությունների և նրանց տրոցկիստական- բուխարինական ագենտուրայի ջլատիչ գործունեության դեմ անողոք պայքար մղելը կարևոր է հատկապես այժմ, ներկա միջազգային դրու-

թյան և մեր յերկրի վրա ռազմական հարձակման ուժեղացող վտանգի կապակցությամբ:

## ՖԱՇԻԶՄԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՊԱՆԴ Ե ՀՐԱՀՐՈՒՄ

Աշխարհն անմիջականորեն սողոսկել է յերկրորդ իմպերիալիստական պատերազմի շրջանը: Ահա արդեն մի քանի տարի յե, ինչ Չինաստանի վիթխարի տարածությունների վրա, Իսպանիայի հողերում պատերազմ է մղվում, վորն սկսել են Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի ֆաշիստական իշխող շրջանակները: Ֆաշիստական ագրեսորները պատերազմ են հրահրում Յեվրոպայի կենտրոնում: Գնալով ավելի ու ավելի յե տարածվում իմպերիալիստական պատերազմի հրդեհը: Ֆաշիստական ագրեսորներն արդեն իսկ անցել են աշխարհի նոր վերաբաժանման: Նրանց խրախուսում են այսպես կոչված «դեմոկրատական պետությունները»— Անգլիան և Ֆրանսիան:

Ինչո՞ւ այնպիսի ուժեղ յերկրներ, ինչպես Անգլիան և Ֆրանսիան, չեն զսպում ագրեսորներին: Ինչո՞ւ նրանք դեմ դուրս



չեն գալիս պատերազմին, վորն սպառնում է նրանց շահերին:

Վորովհետև իմպերիալիստական պետությունների թիկունքներն անհուսալի յեն: Տնտեսական նոր ճգնաժամը կապիտալիստ յերկրներում ծայր առնելով սրել է հարաբերությունները պրոլետարիատի և բուրժուազիայի միջև: Բանվոր դասակարգն ամենուրեք համախմբվում է հակահարված տալու կապիտալի և ֆաշիզմի հարձականը: Ժողովրդական ճակատն Իսպանիայում և Ֆրանսիայում ցույց տվեց, թե ինչպիսի ուժ է ձեռք բերում բանվոր դասակարգը, յերբ նա միացած է: Մասսայական գործադուլները խոսում են մասսաների հեղափոխական վճռականության աճման մասին: Ճապոնական զավթողների դեմ յելած չինական ժողովուրդն որինակ է ծառայում գաղութային յերկրների բոլոր ճնշված ժողովուրդների համար:

Այսպես կոչված «դեմոկրատական» յերկրների կառավարող շրջանները «...հավանություն չեն տալիս ֆաշիստական պետությունների «ծայրահեղություններին» և վախենում են վերջիններիս ուժեղացումից: Բայց նրանք ե՛լ ավելի վախենում են բանվորական շարժումից Յեվրոպայում և աս-

գային–ագրեսորական շարժումից Ասիայում, համարելով վոր ֆաշիզմը «լավ հակաթույն» է հանդիսանում այդ բոլոր «վըտանգավոր» շարժումների դեմ։ Այդ պատճառով են «դեմոկրատական» պետությունների կառավարող շրջանները, իսկ մասնավորապես՝ Անգլիայի պահպանողական կառավարող շրջանները սահմանափակվում են կապը կորած ֆաշիստական ղեկավարներին համոզելու քաղաքականությամբ, թե «չպետք է գործը ծայրահեղությունների հասցնել», միաժամանակ նրանց հասկացնելով, վոր «լիովին հասկանում» և հիմնականում համակրում են բանվորական և ազգային–ազատագրական շարժման դեմ նրանց վարած ռեակցիոն–վոստիկանական քաղաքականությանը[1])։

Անգլիայի և Ֆրանսիայի կողմից ֆաշիստական Գերմանիային թալանի տրված Չեխոսլովակիայի վիճակն սպասում է նաև Յեվրոպայի մյուս փոքր ժողովուրդներին, յեթե ագրեսորներին հակահարված չտրվի։

Այդպիսի քաղաքականությունը խրախու-

---

1) Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմություն, (ռուս. հրատ.) եջ՝ 319



սում է ֆաշիստական ագրեսորներին և է՛լ ավելի յե հրահրում իմպերիալիստական յերկրորդ պատերազմը։

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՆԽՈՐՏԱԿԵԼԻ ԱՄՐՈՑՆ Ե

Միմիայն Խորհրդային Միությունը յեղել է և մնում է մինչև վերջը հավատարիմ իր միջազգային պարտավորություններին և պայմանագրերին։ Միմիայն նա յե իր ձայնը բարձրացնում ի պաշտպանություն փոքր ժողովուրդների, վորոնց սպառնում են ֆաշիստական զավթողները, ի պաշտպանություն խաղաղության, կոլեկտիվ անվտանգության և ստանձնած պարտավորությունների նկատմամբ հավատարմությամբ։ Միայն Խորհրդային Միությունն իր ուժով, կարողությամբ և խաղաղության համար մղած հետևողական պայքարով ամենագըլխավոր խոչընդոտն է հանդիսանում իմպերիալիստական յերկրորդ պատերազմի մըղձավանջի հետագա տարածման ճանապարհին։ Միայն դեպի Խորհրդային Միությունը—միմիայն դեպի նա— ուղղված են ճնշվածների և ամբողջ առաջավոր ու ազ-րեսիվ մարդկության հայացքներն ու հույ-

տերը: Խորհրդային Միությունը վոչինչ ընդհանուր չի ունեցել, չունի և չի ունենալու ագրեսորներին խրախուսելու պլանների հետ: Նա պայքարել է և կպայքարի գլուխը բարձրացրած ֆաշիստական պետություններին կոլեկտիվ կերպով հակահարված տալու ոգով: Յեվ խաղաղության համար, ֆաշիզմի և պատերազմի դեմ մղած իր այդ պայքարում Խորհրդային Միությունը գնալով ավելի ու ավելի կշրջապատվի ամբողջ աշխատավոր մարդկության սիրով և աջակցությամբ:

Իմպերիալիստական յերկրորդ պատերազմը ԽՍՀՄ-ի համար ամենալուրջ մի վտանգ է ներկայացնում: Այդ մասին է խոսում Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի այսպես կոչված հակակոմունիստական բլոկը: Այդ մասին են խոսում ճապոնական զինվորականության անդադրում պրովոկացիաները մեր Հեռավոր-արևելյան սահմաններում: Ամենից ավելի խոշոր պրովոկացիան ճապոնական զինվորականության կողմից, վորը փորձում է Ճապոնիան պատերազմի քաշել ԽՍՀՄ-ի դեմ, Խասան լճի շրջանի դեպքերն եյին: Ճապոնական զինվորականությունն ուզեցավ ավինով շոշա-



փել մեր Կարմիր Բանակի ուժը, բայց սաստիկ սխալվեց:

Սամուրայների դեմ մղված մարտերում յուրաքանչյուր մարտիկ հերոս եր: Այդ մարտերում Հեռավոր-արևելյան մարտիկների ցուցաբերած հերոսությունը վորպես պայծառ մի եջ կմնա մեր Կարմիր Բանակի պատմության մեջ: Մեր մարտիկները Ստալինի անունով գրոհի գնացին ճապոնական զավթողների դեմ: Այդ անունով նրանք ջախջախեցին թշնամուն, խորհրդային սրբազան հողն ազատելով ճապոնական բանդիտներից:

Հեռավոր-արևելյան մարտիկների հետ եր ամբողջ խորհրդային ժողովուրդը: Դա խորհրդային ժողովրդի միասնության, իր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ ջերմ սիրո, նրա սահմանների պաշտպանության համար ամեն րոպե դուրս գալու պատրաստակամության մեծ ցույցն եր: Դա Խորհրդային Միության անխորտակելի կարողության և պաշտպանունակության ցույցն եր:

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԸ

Մեր երկրի ժողովրդական տնտեսությունն ամրանում և աճում է:

Կապիտալ ներդրումները 1938 թվին կհասնեն հսկայական մի թվանշանի—38,3 միլիարդ ռուբլու: Անցյալ տարվա համեմատությամբ կապիտալ ներդրումների գումարն աճում է 30 տոկոսով:

Արդյունաբերության պրոդուկցիան 1938 թվին կարտահայտվի ավելի քան 110 միլիարդ ռուբլու գումարով: 1938 թվի 8 ամիսների տվյալներով, անցյալ տարվա համեմատությամբ քարածուխի հանույթն ավելացել է մոտավորապես 5 տոկոսով, նավթի հանույթը՝ ավելի քան 9 տոկոսով, պողպատի հալումը՝ ավելի քան 6 տոկոսով, մեքենաշինական արդյունաբերության ընդհանուր արտադրանքը՝ ավելի քան 22 տոկոսով, բրդի գործվածքների արտադրությունը՝ ավելի քան 10 տոկոսով, կաշվե ոտնամաններինը՝ ավելի քան 6 տոկոսով, շաքարի և շաքարավազի արտադրությունը՝ գրեթե 70 տոկոսով, կոնսերվներինը՝ ավելի քան 28 տոկոսով և այլն:

Մեծ հաջողություններ են ձեռք բերված



նաև մեր երկաթուղային տրանսպորտի աշխատանքում: 1936 թվին երկաթուղիներն օրական բարձում էին 75—80 հազար վագոն, իսկ 1938 թվին բարձումը հասել է օրական 95—98 հազար վագոնի: Աճում են տեխնիկական բարձր արագություններ ունեցող ծանրաքաշ գնացքները վարող վարպետների շարքերը: Ստախանովական-կրիվոնոսականները վարում են մինչև 5 հազար տոնն քաշով գնացքներ, կրկնակի գերազանցելով նորման:

Սակայն մեր հաջողությունները մեզ չպետք է խանգարեն տեսնելու նաև մեր թերությունները: Ժողովրդական տնտեսության ոչ բոլոր ճյուղերն են կատարում իրենց պլանը: Վատ է աշխատում անտառային արդյունաբերությունը: Իր պլանները դեռևս չի կատարում թեթև արդյունաբերությունը: Ժողովրդական տնտեսության այս ճյուղերում մինչև այժմ դեռևս լիկվիդացիայի չեն ենթարկված աջ-տրոցկիստական լրտեսների և դիվերսանտների վնասարարության հետևանքները: Դեռևս թույլ է ծավալված պայքարն աշխատանքի ստախանովական մեթոդների խորն արմատացման համար:

Ժողովրդական տնտեսության վերելքն

ամուր հիմք ունի: Այդ հիմքն է հանդիսանում աշխատանքի արտադրողականության աճումը: 1938 թվի առաջին կիսամյակում աշխատանքի արտադրողականությունը ծանր արդյունաբերության մեջ անցյալ տարվա համապատասխան շրջանի համեմատությամբ աճել է 5,5 տոկոսով, սննդի արդյունաբերության մեջ՝ 11 տոկոսով։

Ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքից հետ չի մնում նաև գյուղատնտեսությունը: Ի՞նչ է ներկայացնում այժմ մեր գյուղատնտեսությունը:

Դա աշխարհիս ամենախոշոր, մեքենայացված տնտեսությունն է: 9 միլիոն ձիաուժի ավելի քան 470 հազար տրակտոր հերկում են մեր դաշտերը: ՄՏԿ-ների 137·748 կոմբայնները և 138·878 ավտոմոբիլներն սպասարկում են կոլտնտեսային դաշտերը: Մեր գյուղատնտեսությունը ներկայացնում է 243 հազար կոլտնտեսություն, հազարավոր խորհտնտեսություններ, որոնք գործադրում են նորագույն ագրոնոմիական գիտությունը:

Զարմանալի չէ, որ մենք այժմ շատ հետ ենք թողել հին բերքերը: Դեռևս 1937 թվականը մեզ տվեց 7 միլիարդ փութ հաց: Մեկ հեկտարից 25—35 և 45



ցենտներ ցորենի բերքն այլևս բացառություն չի հանդիսանում: Մեր գյուղատնտեսությունը յերկիրն ամբողջապես ապահովում է արդյունաբերական հումքով—վուշով, բամբակով: Մեր պարենային ռեսուրսները վիթխարի յեն:

Ժողովրդական տնտեսության աճման հետ միասին աճում է նաև աշխատավորների նյութական մակարդակը: Այդպիսին է տնտեսության սոցիալիստական սիստեմի որենքն ի տարբերումն կապիտալիստական սիստեմի:

Մեզանում ամեն ինչ յենթարկված է ժողովրդի շահերին:

«Հեղափոխությունները անցյալում կործանվում էյին նրանից, որ նրանք, ժողովրդին ազատություն տալով, հնարավորություն չէյին ունենում դրա հետ մեկտեղ նրան նյութական և կուլտուրական դրության լուրջ բարելավում տալու: Սրանումն էր նրանց հիմնական թուլությունը: Մեր հեղափոխությունը մյուս բոլոր հեղափոխություններից տարբերվում է նրանով, որ նա ժողովրդին ոչ միայն ազատություն տվեց ցարիզմից, կապիտալիզմից, այլև արմատապես բարելավեց նրա նյութական և կուլտուրական դրությունը: Սրանումն է

մեր հեղափոխության ուժն ու անպարտելիությունը»[1]) :

Մեզանում տարեց-տարի աճում է աշխատավարձի ֆոնդը: Աճում են հատկացումները սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար: Աշխատավարձի ֆոնդն այս տարի հասնում է 94 միլիարդ ռուբլու գումարի—12 միլիարդով ավելի, քան 1937 թվին: Հենց միայն յերեխաների դաստիարակության և կրթության համար այս տարի բաց է թողնվում 10 միլիարդ ռուբլի: Սոցիալ-կուլտուրական միջոցառումների ընդհանուր ծախսերը վոչ-բյուջետային ծախսերի հետ միասին այս տարի կկազմեն 42 միլիարդ ռուբլի:

Մեր ժողովուրդը վստահ է վաղվա որվան համար: Նա հիանալի ապագա ունի: Տարեց-տարի նա առաջ է շարժվում դեպի կոմունիզմի գաղափարները, դեպի անսահման յերջանկությունն ու բերկրալի կյանքը:

Ի՞նչ կարող են հակադրել դրան կապիտալիստական յերկրները:

Միլիոնավորների քաղց, գործազրկու-

1) Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմություն, (ռուս. հրատ.), եջ 326:



թյուն, սովամահություն ահ, ֆաշիստական-վատիկանական մորալ, կուլտուրայի և պրոգրեսի միջնադարյան հալածանքներ:

Յերկու սիստեմների—կապիտալիզմի սիստեմի և սոցիալիզմի սիստեմի— պայքարում պատմությունն արդեն հանել է իր վերջնական դատավճիռը. կապիտալիզմի սիստեմը կործանման է դատապարտված: Մարդկության ապագան սոցիալիզմի հաղթանակի մեջ է համայն աշխարհում:

## ՄԱՐԴԻԿ, ԿԱԴՐԵՐՆ ԱՄԵՆԱԱՐԺԵՔԱՎՈՐ ԿԱՊԻՏԱԼՆ ԵՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Աշխարհում վոչ մի յերկիր չունի և չի կարող ունենալ մարդկանց այնպիսի հզոր աճում, նոր ինտելիգենցիայի աճում, ինչպիսին կա մեր յերկրում:

Տասնյակ հազարավոր մարդիկ վերջին տարիներս անցել են տնտեսական, կուսակցական և պետական ապարատի ղեկավարմանը: Կարճ ժամանակամիջոցում նրանք տիրապետեցին ղեկավարության մեծ արվեստին և գործն առաջ են շարժում:

Հարյուր հազարավոր և միլիոնավոր մարդիկ գիտելիքներ են ստացել, տիրապետել են տեխնիկային, դարձել են ստախանովականներ, սոցիալիստական արդյունա-

բերության, գյուղատնտեսության առաջավորներ: Աճել են նոր, խորհրդային ինտելիգենցիայի կադրեր:

Ի՞նչ է իրենից ներկայացնում մեր ինտելիգենցիան:

Դա մեր կուսակցական, պետական, պրոֆմիութենական, կոմյերիտական կազմակերպությունների ղեկավարներն են, ինժեներներ, տեխնիկներ, բժիշկներ, մեր ձեռնարկությունների, յերկաթուղիների, խորհտնտեսությունների և կոլտնտեսությունների հրամանատարներ, դա ուսուցիչների բանակն է, մեր խորհրդային դրողները, ճարտարապետները և կառուցողները, մեր բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտների գիտական աշխատողները և մասսավոր աշխատանքի ուրիշ շատ բնագավառների գործիչները:

Մեր ինտելիգենցիայի բազմամիլիոն բանակն ամենալայն ասպարեզներն ունի իր ստեղծագործական ուժերի և ընդունակությունների զարգացման համար: Նա մեր վողջ խորհրդային ժողովրդի անբաժան, իրավահավասար մասն է հանդիսանում: Վորովհետև մեր ինտելիգենցիան—դա բանվորների, կոլտնտեսականների և աշխատավոր ինտելիգենցիայի զավակներն են:



Դրանք ժողովրդից յելած կադրեր են, վոր մինչև վերջը նվիրված են ժողովրդի գործին: Դրանք կադրեր են, վորոնք տիրապետել են համաշխարհային գիտության բարձունքները և առաջ են շարժում այն:

Ինչո՞ւմն է մեր կադրերի, մեր աշխատավոր խորհրդային ինտելիգենցիայի ուժը:

Նրանց ուժը նրանումն է, վոր նրանք կապված են ժողովրդի հետ և ծառայում են ժողովրդին: Նրանց ուժը նրանումն է, վոր նրանք դաստիարակվում են առաջավոր գիտության վոգով, այն առաջավոր գիտության, վորի ցայտուն ներկայացուցիչներն են հանդիսանում, օրինակի համար, Պապանինը, Ստախանովը, վորոնք նովատորներ են դարձել գիտության մեջ:

Խորհրդային ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները, հայրենիքի վորդիներն ու դուստրերը, ժողովրդից յելած պարզ մարդիկ ամբողջ աշխարհին ցույց են տալիս ապշեցուցիչ արիության, հերոսության, նպատակին հասնելու խնդրում ցուցաբերվող յերկաթյա համառության հետ շաղկապված բարձր տաղանդավորության օրինակներ:

Պապանինյան էքսպեդիցիան զարմանք ու

հիացմունք առաջացրեց ամբողջ աշխարհում: Նա համաշխարհային գիտության պատմության մեջ ամենափայլուն էջերից մեկը գրեց: Իսկ ովքե՞ր են պապանինականները: Դրանք ժողովրդից յելած պարզ մարդիկ են, վորոնք խորհրդային ինտելիգենցիայի ծաղիկը դարձան:

Շատ ժամանակ չանցավ, և աշխարհը նորից ապշեց Վլադիմիր Կոկկինակիի անվայրէջք թռիչքով Մոսկվայից Վլադիվոստոկի շրջանը: Իսկ ո՞վ է Կոկկինակին: Ժողովրդից յելած հասարակ մի մարդ, նախկին բեռնակիր:

Ամենադժվարին պայմաններում Մոսկվայից Հեռավոր Արևելք անվայրէջք թռիչք կատարած յերեք խորհրդային կանանց՝ Գրիզոդուբովայի, Օսիպենկոյի և Ռասկովայի հերոսական սխրագործությունը հիացնում է ամբողջ առաջավոր մարդկությանը: Նրանց անդուգական տոկունությունը, քաջարիությունը, հնարամտությունը, բարձր վարպետությունը մեր յերկրի յուրաքանչյուր քաղաքացու մեջ առաջացնում են իր հայրենիքի, նրա սքանչելի դուստրերի նկատմամբ մեծագույն հպարտության զգացմունք: Իսկ ովքե՞ր են նրանք, այդ



հերոսուհիները: Դրանք ժողովրդից յելած, նրա միս ու արյունից կերտված հասարակ կանայք են:

Կատարելով կուսակցության և կառավարության առաջադրությունը, գերազանցելով կանանց բոլոր միջազգային ավիացիոն ռեկորդները, նրանք փայլուն վայրէջք կատարեցին խորոտ ճահճում, խուլ ու անմարդաբնակ տայգայում: Այնտեղ, մենակ, տայգայի խորքում, յերեք կանայք վոչ մի պահ չկորցրին արիությունը: Նրանք գիտեյին, վոր ժողովուրդը, կուսակցությունը, ընկեր Ստալինը մարդուն մենակ չեն թողնի:

Հայրենիքը բարձր սխրագործություններին վարձատրում յերբեք դեռ անհայտ մարդկանց: Ստալինյան մեծ եպոխան հերոսներ է ծնում: Նա ծնում է ազատագրված, սոցիալիստական աշխատանքի սքանչելի վարպետներ, ծնում է գիտության նովատորներ, վորոնք համարձակորեն առաջ են շարժում այն:

Մեր յերկիրը միջոցներ չի խնայում գիտության ծաղկման համար: Գիտա-հետազոտական աշխատանքի ծախսերը 1938 թվին վորոշվում են 1016 միլիոն ռուբլու գումա-

րով: Դա 20 տոկոսով ավելի է, քան 1937 թվին: Մեր ԲՈՒՀ-երում սովորում են 550 հազար հոգի,— դա ավելի է, քան Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրներում միասին վերցրած:

Երկրում աճում է ստախանովյան շարժման նոր, հզոր ալիքը: Ապահովել ստախանովականների մեթոդների յուրացումը բոլոր բանվորների կողմից— այդպիսին է մեր ձեռնարկությունների ղեկավարների գլխավոր խնդիրը: Ստախանովյան հաջողությունները դարձնել մասսաների սեփականություն— այդ նշանակում է մեր տնտեսությունը խիստ առաջ շարժել և անցնել կապիտալիստական առաջավոր երկրներից: Միաժամանակ դա կնշանակի մեր կադրերի, մեր այն ինտելիգենցիայի արագ աճում, որն առաջ է շարժելու գիտությունը:

Կուսակցական բոլոր կազմակերպությունների պարտականությունն է՝ մեր խորհրդային ինտելիգենցիային շրջապատել ուշադրությամբ, հոգատարությամբ, հարգանքով, օգնությամբ: Հարկավոր է հիշել, որ մեր խորհրդային ինտելիգենցիան խորհրդային հողի աղն է, որովհետև



նրա կազմի մեջ մտնում են լավագույն մարդիկ, խորհրդային ժողովրդի առաջավոր որդիներն ու դուստրերը: Մտավոր աշխատանքի մեր գործիչները վերակշռող մեծամասնությամբ ժողովրդից են դուրս եկել: Եվ նրանք ծառայում են ժողովրդին: Հարկավոր է արմատախիլ անել այն արհամարհական վերաբերմունքը խորհրդային ինտելիգենցիայի հանդեպ, որպիսին դեռևս տեղ-տեղ գոյություն ունի: Այդ արհամարհանքը թշնամի է ժողովրդի շահերին: Կարևորագույն խնդիր է հանդիսանում խորհրդային ինտելիգենցիայի զինումը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով:

Առանց թեորետիկական մարքսիստական-լենինյան կոփման մեր ինտելիգենցիան չի կարողանա ղեկավարել տնտեսական, կուլտուրական, պետական շինարարության այն ճակատամասը, որ վստահել են նրան:

Մեր խորհրդային ինտելիգենցիան մեր շինարարության բոլոր ճյուղերի հաջող ղեկավարման աննախընթաց բարձրության կհասնի, երբ կտիրապետի մարքսիզմ-լենինիզմին— բոլոր գիտությունների գիտությանը:

## ԲՈԼՇԵՎԻԶՄԻ ՈՒԺՆ ՈՒ ԱՆՊԱՐՏԵԼԻՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական հեղափոխության 21-րդ տարին նշանավոր դարձավ խոշորագույն մի իրադարձությամբ մեր կուսակցական կյանքում: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի հանձնաժողովի խմբագրությամբ, ընկեր Ստալինի ամենամոտիկ, անձնական մասնակցությամբ լույս տեսավ ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի կողմից հավանություն գտած խոր գիտական մի աշխատություն— Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Պատմությունը:

Կուսակցությունը և երկիրը ստացան բացառիկ հզորագույն մի զենք, որն օգնում է տիրապետելու բոլշևիզմին:

Այս թեորետիկական աշխատության լույս տեսնելը աննախընթաց բարձրության վրա կհանի մեր կադրերի մարքսիստական-լենինյան, իդեական կոփման գործը: Այս աշխատության մեջ բացառիկ ուժով և հստակությամբ ցույց է տրված մարքսիստական-լենինյան թեորիայի մեծ, վերափոխիչ և հեղափոխականացնող ուժը: Այդ թեորիային տիրապետելը այժմ կուսակցու-



թյունն առաջադրում է որպես կարևորագույն խնդիրներից մեկը:

Ուսումնասիրելով ՀամԿ(բ)Կ պատմությունը, մեր կադրերը կուսումնասիրեն լենինիզմը գործողության մեջ: Նրանք կյուրացնեն այն ամբողջ նորը, ինչ մտցրել է Լենինը, իսկ Լենինից հետո Ստալինը և Լենինի մյուս աշակերտները մարքսիզմ-լենինիզմի թեորիայի մեջ: Նրանք կըմբռնեն սոցիալիստական հեղափոխության լենինյան-ստալինյան թեորիան: Նրանք կտիրապետեն բոլշևիկների կուսակցության թեորետիկական հիմքին— դիալեկտիկական և պատմական մատերիալիզմին: Բոլշևիկների կուսակցության 35-ամյա պայքարի փորձի հիման վրա նրանք կիմանան պրոլետարիատի կուսակցության վերաբերյալ լենինյան-ստալինյան ուսմունքի մեծությունը,— այն նոր տիպի կուսակցության, որպիսին հանդիսանում է մեր կուսակցությունը: Նրանք կսովորեն ե՛լ ավելի ուժգին ատել սոցիալիզմի թշնամիներին, կտոգորվեն հասարակական զարգացման օրենքների ըմբռնողությամբ, ե՛լ ավելի խորն ու անսասան հավատով Լենին-Ստալինի գործի անպարտելիության նկատմամբ:

Ո՞րն է այն գլխավոր յեզրակացությունը, որ կանեն աշխատավորները, ուսումնասիրելով բոլշևիկյան կուսակցության պատմությունը:

Գլխավոր յեզրակացությունը նրանումն է կայանում, որ առանց այնպիսի կուսակցության, ինչպիսին է Լենինի-Ստալինի կուսակցությունը, բանվոր դասակարգը չեր կարողանա հաղթել: «...Պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակն անհնարին է առանց պրոլետարիատի հեղափոխական կուսակցության, որն ազատ է օպորտունիզմից, անհաշտ է հաշտվողականների և կապիտուլյանտների նկատմամբ, հեղափոխական է բուրժուազիայի և նրա պետական իշխանության նկատմամբ» 1):

Մենք հաղթեցինք հոկտեմբերին, որովհետև բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության գլուխն եր կանգնած բոլշևիկների կուսակցությունը, «...Նոր տիպի կուսակցությունը, մարքսիստական-լենինյան կուսակցությունը, սոցիալական հեղափոխության կուսակցությունը, որն ըն-

1) Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմություն, (առաջ. հրատ.), եջ 337:



դունակ է պրոլետարիատին նախապատրաստելու վճռական ճակատամարտերի ընդդեմ բուրժուազիայի և կազմակերպելու պրոլետարական հեղափոխության հաղթանակը» 1):

Մարքսիստական-լենինյան թեորիայի սպառազինությամբ բոլշևիկների կուսակցությունը ամրակուռ կերպով և վստահորեն բանվոր դասակարգին առաջ տարավ: Նա համախմբեց մասսաներին, նա ավեց պայքարի լոզունգներ, որոնք միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց պայքարի հանեցին սոցիալիզմի համար: Նա անպարտելի դարձավ, որովհետև կարողանում է, ինչպես Լենինն է ասում, «...Կապվել, մոտենալ, որոշ չափով, յեթե կուզեք, միախառնվել աշխատավորների ամենալայն մասսային, առաջին հերթին պրոլետարական, բայց նաև վոչ պրոլետարական աշխատավորական մասսային» 2):

Բոլշևիկների կուսակցությունը հակահարված կազմակերպեց ներքին և արտաքին

1) Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմություն, (առաջ. հրատ.), եջ 337:

2) Լենին, Յերկեր, հ. XXV, եջ 174:

հակահեղափոխության հանդեպ, կապիտալիստական շրջապատման բոլոր ագենտների հանդեպ, վորոնք վտանգություն էյին անում մեր հայրենիքի ամբողջականության և խորհրդային ժողովուրդների նվաճումների դեմ: Նա յերկիրը տարավ բոլոր դժվարությունների միջով և հասցրեց սոցիալիզմի հաղթանակին, Ստալինյան Սահմանադրությանը:

Բոլշևիկների կուսակցությունը, Լենին-Ստալինի կուսակցությունը մեր յերկիրը դարձրեց սոցիալիզմի անմատչելի ամրոց: Նա անհասանելի բարձրության վրա հանեց աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակը:

Ահա թե ինչո՛ւ այնքան բոցավառ է մասսաների սերը դեպի բոլշևիկյան կուսակցությունը, դեպի նրա առաջնորդ և ուսուցիչ Մեծ Ստալինը:

Ունենալով այսպիսի կուսակցություն, մենք անպարտելի յենք:

---



# ԽՍՀՄ ՀԶՈՐ ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ Ե

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Հետամնաց, ագրարային յերկրից մեր յերկիրը դարձել է հզոր ինդուստրիալ պետություն, սոցիալիզմի անպարտելի յերկիր:

Արդյունաբերության ընդհանուր պրոդուկցիայով ցարական Ռուսաստանը հինգերորդ տեղն եր բռնում աշխարհում և չորրորդ տեղը Յեվրոպայում: ԽՍՀՄ-ն դուրս է յեկել առաջին տեղը Յեվրոպայում և յերկրորդ տեղը աշխարհում:

ԽՍՀՄ մեքենաշինությունն առաջին տեղն է բռնում Յեվրոպայում և յերկրորդ տեղը աշխարհում: Յերկաթահանքի հանույթով մեր յերկիրը կանգնած է առաջին տեղը Յեվրոպայում և յերկրորդ տեղը աշխարհում: Վոսկու հանույթով, սուպերֆոսֆատի արտադրությամբ Խորհրդային Միու-

թյունն առաջ է անցել Յեվրոպայի բոլոր յերկրներից: Հսկայական հաջողություններ են ձեռք բերված էլեկտրոֆիկացիայի բնագավառում: Ցարական Ռուսաստանն էլեկտրոէներգիայի արտադրությամբ տասնհինգերորդ, ամենավերջին տեղն էր բռնում աշխարհում: ԽՍՀՄ-ն դուրս է յեկել յերկ-, րորդ տեղը Յեվրոպայում և յերրորդ տեղըն աշխարհում:

Ցարական Ռուսաստանը չգիտեր յերկրի հարստությունները: 1913 թվին այնպես էր համարվում, թե Ռուսաստանն ունի 220 միլիարդ տոնն ածուխ, 4200 միլիոն տոնն նավթ, 2 միլիարդ տոնն յերկաթի պաշար: Մեր վիթխարի բնական հարստությունները չեյին բացված և չեյին ուսումնասիրված: Նրանք օգտագործվում եյին գիշատիչ յեղանակով:

Յեվ միայն խորհրդային իշխանության օրով աշխատավորները ճանաչեցին և բազմացրին մայրենի հողի անսպառ հարստությունները:

Յերկրաբանական-հետախուզական աշխատանքներն ամենալայն թափ ստացան: Յերկրաբանորեն մշակված է արդեն մեր յերկրի մեկ յերրորդ մասը: Հարստություն-



ներն մեզանում անսպառ քանակի յեն: Ածուխ՝ ավելի քան 1600 միլիարդ տոնն, նավթ՝ 6800 միլլիոնն տոնն, յերկաթ՝ 10 միլիարդ տոնն, իսկ Կուրսկի մագնիսային անոմալիայի հետ միասին՝ 200 միլիարդ տոնն:

Անհաշիվ հարուստ են մեր հողաշերտերը վոսկով և պղնձով, արճճով և ցինկով, նիկելով և այլ կարևորագույն հանածոներով: Ածուխի պաշարով ԽՍՀՄ-ն յերկրորդ տեղումն է գտնվում աշխարհում: Յերկաթը, նավթը, մարգանեցը մեզանում ավելի շատ են, քան վորևէ այլ յերկրում:

Փոխվել է հանույթի յեղանակը: Մարդու մկանային ուժին փոխարինելու յեն յեկել կատարելագործված, բարձր-արտադրողական մեխանիզմները: Ածխահանման մեքենայացումով ԽՍՀՄ-ն առաջին տեղումն է կանգնած աշխարհում: Իսկ ցարական Ռուսաստանում ածխահանումը մեքենայացված էր ընդհամենը 1,7 տոկոսով: Նավթի հանույթը ԽՍՀՄ-ում մեքենայացված է համարյա ամբողջապես— 98%-ով:

Խորհրդային ժողովուրդը տիրաբար է օգտագործում յերկրի հարստությունները: Նա կառուցել է նոր շախտեր, նոր գիգանտ

գործարաններ, նոր գրանդիոզ էլեկտրո-էներգետիկ կառուցվածքներ։ Ամբողջ արդյունաբերական պրոդուկցիայի 80%-ից ավելին արտադրում են այնպիսի ձեռնարկություններ, վորոնք նոր են կառուցված կամ ամբողջապես վերակառուցված են ստալինյան յերկու հնգամյակների տարիներին։ Հենց միայն Մագնիտոգորսկի մետալուրգիական գործարանը տալիս է համարյա յեռապատիկ ավելի չուգուն, քան ամբողջ Լեհաստանը։ Յերեք գործարան— Մագնիտոգորսկի, Կուզնեցկի և Մակեյեվկայի գործարանները տալիս են ավելի շատ չուգուն, քան ցարական Ռուսաստանի բոլոր գործարանները։ Դնեպրոգեսը, վորն իր կարողությամբ յերկրորդ էլեկտրոկայանն է աշխարհում, ավելի շատ էլեկտրոէներգիա յե արտադրում, քան ցարական Ռուսաստանի բոլոր էլեկտրոկայանները։

Ստեղծված է յերկրի ինդուստրացման հիմքը՝ հզոր սև մետալուրգիան, տրակտորաշինություն և կոմբայնաշինություն, ավտոմոբիլի արդյունաբերություն, դազգյահաշինություն, ժամանակակից քիմիական արդյունաբերություն, առաջավոր գյուղատնտեսական մեքենաշինություն,



հզոր ավիացիոն արդյունաբերություն։ Ստեղծված են ինդուստրիայի ամբողջ նոր ճյուղեր, վորոնք ամենևին չկային ցարական Ռուսաստանում։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՑԱՐԱԿԱՆ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ

Ցարական Ռուսաստանն աղքատ գյուղացիական յերկիր եր։ Կալվածատիրական սարկացումը, հարկերը կործանում եյին գյուղացիությանը, հողազրկությունը խեղդում եր նրան։ Տասնյակ միլիոնավոր գյուղացիներ այնքան հող ունեյին, վորքան հազարավոր կալվածատերեր։ Մի ցարական ընտանիք ավելի շատ հող ուներ, քան կես միլիոն գյուղացիական ընտանիքներ, գյուղացիական ծխերի 65 տոկոսը կազմում եյին չքավորները։ Բոլոր գյուղացիական ծխերի մեկ յերրորդը ձի չուներ։ Մեկ յերրորդից ավելին չուներ նույնիսկ այն հասարակ ինվենտարը, վորի ոգնությամբ գյուղացին քչփորում եր իր աղքատիկ հողաշերտը։ Ծխերի 15 տոկոսն ամենևին վոչինչ չեր

ցանում. Նրանք ո՛չ հող ունեյին, ո՛չ ինվենտար, ո՛չ ձի:

Հողագործության տեխնիկան պապենական էր: Գյուղատնտեսության հիմնական գործիքն արորն էր: Միայն կալվածատիրական և կուլակային տնտեսություններում հանդիպում էին ավելի բարդ գործիքներ: Ագրոնոմիական գիտությունը, հանքային պարարտանյութերը համարյա չէին գործադրվում:

Հողը հյուծվում էր և ժլատ էր բերք տալիս: Սակավ էր լինում, որ մեկ հեկտար հողը 6-7 ցենտներից ավելի հացահատիկ տար:

Ամբողջ հացի կեսը գտնվում էր կալվածատերերի և կուլակների ձեռքում: Նրանց ձեռքն էին ընկնում նաև գյուղատնտեսության եկամուտները: Միլիոնավոր չքավորներին բաժին էին ընկնում միայն պարտքերը: Վ. Ի. Լենինը հաշվել է, որ բոլոր ծախսերից հետո ունեվոր ընտանիքներին մնում էր տարեկան 197 ռուբլի զուտ եկամուտ, միջակներին մնում էր յերկու ռուբլի, իսկ չքավորները տնտեսությունից 21 ռուբլի զուտ վնաս էին ունենում: Այսպես էր ապրում մինչհեղափո-



խական շրջանի գյուղացիությունը—կալվածատիրական և կուլակային սարկացման ներքո, աղքատության և աղխության մեջ:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը աշխատավոր գյուղացիությանն ընդմիշտ ազատագրեց շահագործող կալվածատերերից, արնախում կուլակից: Նա հողը խլեց բոլոր պարազիտներից և ձրիակերներից— կալվածատերերից և կուլակներից, յեկեղեցիներից և վանքերից— և տվեց աշխատավոր գյուղացիությանը: Բանվոր դասակարգը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ իր հետևից տարավ խորհրդային գյուղացիությանը և դուրս բերեց կոլեկտիվացման ուղին: Կուլակության դեմ ուղղված դասակարգային անողոք պայքարում կոլտնտեսային կարգերը հաղթանակեցին: Այժմ կոլտնտեսությունները միավորում են բոլոր գյուղացիական տնտեսությունների 93 %-ը և ցանքատարածության 99,1 %-ը:

Կոլեկտիվացումը կերպարանափոխեց մեր

յերկրի գյուղատնտեսությունը, անճանաչելիորեն փոխեց գյուղացիության կյանքը: Ջնջված են միջասահմանները, անհետացել է չքավորությունը: Այլևս սով չկա: Ընդմիշտ անցյալի գիրկն են անցել գյուղի աղքատությունն ու անկուլտուրականությունը: Դաշտն են յեկել գյուղատնտեսական առաջավոր տեխնիկան և գիտությունը: Մեքենա-տրակտորային կայանների տրակտորներն ու կոմբայնները մշակում են կոլտնտեսային հողը, հավաքում են կոլտնտեսային առատ բերքը:

Ագրոնոմների բազմահազար բանակը, հազարավոր խրճիթ-լաբորատորիաները գյուղատնտեսության մեջ արմատացնում են առաջավոր գիտությունը:

Նոր ձևով է ծաղկել մեր հողը: Հյուսիսում, ուր առաջ յերբեք ցորեն չի աճել, արդեն հասկ են բռնել ցորենի դաշտերը: Դաժան Կամչատկայում աճում են պոմիդորը և վարունգը: Կրասնոյարսկում հասունանում է խնձորը: Ցուրտ Անդրբևեռյան յերկրում աճում են բանջարեղենները: Հողն առատաձեռն պատասխան է տալիս խորհրդային մարդու հոգատարությանը:



Դաշտերի ստախանովականները մեկ հեկտարից վերցնում են 30 և ավելի ցենտներ հացահատիկ: 1937 թվին յերկիրը հավաքեց 7 միլիարդ փութ հացահատիկ: Վիթխարի բերք ստացավ յերկիրը 1938 թվին: Հողագործության պրոդուկցիան 1937 թվին ավելացավ 1913 թվի համեմատությամբ ավելի քան 2 անգամով և կազմեց 16,6 միլիարդ ռուբլի (1926-1927 թվի գներով): Իսկ ամբողջ գյուղատնտեսությունը տվեց 23 միլիարդ ռուբլու պրոդուկցիա— գրեթե 2 անգամով ավելի քան ցարական Ռուսաստանում 1913 թվին:

Կոլտնտեսությունները հարուստ յեկամուտներ են ստանում: Քիչ չեն արդեն միլիոնատեր կոլտնտեսությունները: Ազատ, սոցիալիստական յերկրում կյանքը մեր գյուղացիությունը դարձրել է յերջանիկ, կուլտուրական կոլտնտեսական գյուղացիություն:

---

# ԽՍՀՄ-ՈՒՄ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ XXI ՏԱՐԵԴԱՐՁԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԶԵԿՈՒՑՄԱՆ ՅԵՎ ԶՐՈՒՅՑԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ՊԼԱՆԸ

## 1. ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՏԱՐԻՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության 21-րդ տարին— սոցիալիզմի յերկրի նոր, մեծագույն հաղթանակների տարին է: Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության տարեդարձը ամբողջ աշխարհի պրոլետարիատի, ամբողջ առաջավոր և պրոգրեսիվ մարդկության տոնն է: Լենինի-Ստալինի կուսակցությունը մեծ հաղթանակների կազմակերպիչն է, վոգեշնչողն ու առաջնորդը:

Հաղթանակների աղբյուրը—ստալինյան Սահմանադրությունն է: Խորհրդային քաղաքացու մեծ իրավունքներն ու սրբազան



պարտականությունները: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և միութենական ու ինքնավար հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունները: Կոմունիստների և անկուսակցականների բլոկի հաղթանակը: ԽՍՀՄ ժողովուրդների անխախտելի բարեկամությունը: Խորհրդային ժողովրդի բարոյական, քաղաքական միասնությունը:

21-րդ տարին խորհրդային գիտության և տեխնիկայի չտեսնված հաղթանակներ բերեց: Անմոռանալի «Հյուսիսային բևեռ» դրեյֆող կայանի փառապանծ էպոպեյան: Վլադիմիր Կոկկինակիի և Ալեքսանդր Բրյանդինսկու հերոսական թռիչքները: Խորհրդային քաջարի հերոսուհիներ Գրիզոդուբովայի, Օսիպենկոյի, Ռասկովայի և Լոմակոյի անվայրէջք թռիչքները:

Ինչպիսի՛ թշնամիների դեմ մղված պայքարում նվաճվեցին մեծ հաղթանակները: Կապիտալիստական շրջապատման և նրա տրոցկիստական-բուխարինյան ու բուրժուա-նացիոնալիստական աղենտուրայի մասին: Բուխարինյան-տրոցկիստական շպիոնների, վնասարարների և մարդա-

պանների, հայրենիքի դավաճանների, ժողովրդի յերդվյալ թշնամիների արմատահանումն ու ոչնչացումը:

## 2. ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՅԵՐՋԱՆԻԿ ԱՅՍՕՐԸ

Ինչո՞ւմն է մեր հեղափոխության ուժն ու անպարտելիությունը: Նա «...ոչ միայն փշրեց կապիտալիզմի շղթաները և ազատություն տվեց ժողովրդին, այլև կարողացավ ժողովրդին տալ նյութական պայմաններ ունևոր կյանքի համար» (Ստալին):

Ստալինյան յերկու հնգամյակները, վորոնք արմատապես վերափոխեցին յերկրի տեսքը: Սոցիալիստական ինդուստրացումը: Կոլտնտեսային կարգերի հաղթանակը և կուլակության՝ վորպես դասակարգի՝ լիկվիդացիան: ԽՍՀՄ զարգացման նոր շրջանը սոցիալիզմի կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմի անցնելու շրջանն է:

Սոցիալիստական հեղափոխության 21-րդ տարին ամբողջ ժողովրդի ունևորության և բարեկեցության հետագա աճման տարին յեղավ: Ժողովրդա-տնտեսական պլանի



կատարումը: Ստախանովյան շարժման հաջողությունները: ԽՍՀ Միության 1938 թվի պետական բյուջեն, վորն ընդունվեց ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկրորդ Սեսիայի կողմից— ժողովրդական բարեկեցության ծաղկման և կուլտուրական հեղափոխության հաջողությունների ցայտուն ցուցանիշն է:

Փոխվում է քաղաքների և գյուղերի տեսքը: Աճում են նոր, սքանչելի բնակելի տներ, թատրոններ և կուլտուրայի պալատներ, դպրոցներ և գիտական ինստիտուտներ, սանատորիաներ և ծննդաբերական տներ: Գյուղը մոտենում է քաղաքին:

Սոցիալիզմի հաղթանակների յերաշխիքը խորհրդային մարդկանց անսահման սերն է դեպի իրենց հայրենիքը, դեպի Լենինի-Ստալինի կուսակցությունը, դեպի աշխատավորների մեծ առաջնորդ և ուսուցիչ, ընկեր Ստալինը:

## 3. ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ՅԵԼՔ Է ՓՆՏՐՈՒՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԵՋ

Տնտեսական ճգնաժամի կարճատև անկումը փոխարինվեց նոր ճգնաժամով: Արագ աճում է գործազրկությունը: Ժողովրդ-

դական ամենալայն մասսաների աղքատացումը: Աշխատավորների մղձավանջային դրությունը ֆաշիստական յերկրներում:

Սրվում են հակասությունները բուրժուազիայի և պրոլետարիատի միջև: Ուժեղանում է կապիտալիստների հարձակումը բանվորների և բոլոր աշխատավորների՝ առանց այդ էլ ցածր կենսամակարդակի վրա:

Սրվում են հակասությունները իմպերիալիստական յերկրների միջև: Սպառազինումները կատաղորեն առաջ են քշում: Ֆաշիստական ագրեսորները անտեսական ճգնաժամից և ներքին աճող դժվարություններից յելք են փնտրում պատերազմական ավանտյուրաների մեջ, թույլ պաշտպանված յերկրները գրավելու և թալանելու մեջ:

Ֆաշիստական Իտալիայի կողմից Հաբեշստանի ստրկացումը, իտալո—գերմանական ինտերվենցիան Իսպանիայում, ճապոնական ինտերվենցիան Չինաստանում: Ավստրիայի գրավումը Գերմանիայի կողմից: Չեխոսլովակիայի բաժանումը: Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջանների քաղաքականությունը — ֆաշիս-



տական ագրեսորներին խրախուսելու քաղաքականություն է:

Ֆաշիստական ագենտուրայի ջլատիչ աշխատանքը ամբողջ աշխարհում: Ֆաշիզմի տրոցկիստական շների զզվելի գործերն Իսպանիայում, Չինաստանում և մյուս յերկրներում:

«...Իմպերիալիստական յերկրորդ պատերազմը գործնականում արդեն սկսվել է: Նա սկսվել է գաղտնաբար, առանց պատերազմի հայտարարման: Պետություններն ու ժողովուրդներն ասես աննկատելի կերպով սողոսկել են իմպերիալիստական յերկրորդ պատերազմի ուղեծրի (орбита) մեջ» (ՀամԿ(բ)Կ պատմություն):

## 4. ԸՆԴԴԵ՛Մ ՖԱՇԻԶՄԻ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ, ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՀԱՄԱՐ

Ամբողջ պրոգրեսիվ, առաջավոր մարդկությունը համախմբվում է պայքարելու ֆաշիզմի և պատերազմի դեմ: Իսպանիայի և Չինաստանի ժողովուրդների հերոսական պայքարը: Ժողովրդական շարժման ֆրոնտը: Ֆրանսիայի և Անգլիայի աշխատավորների բողոքը ագրեսորների

հետ համաձայնության գալու քաղաքականության դեմ։

Հակաֆաշիստական շարժումը ֆաշիզմի երկրներում։ Հակապատերազմական ելույթները Գերմանիայում և Իտալիայում։ Դասալքությունը և ինքնասպանությունները գերմանական և ճապոնական բանակներում։ Ֆաշիստական բռնացողների անամոթ թիկունքը։

## 5. ԽՍՀՄ-Ն ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Մեր երկիրը հաստատապես և հետևողականորեն պայքարում է խաղաղության համար։ Մասնակցությունն Ազգերի լիգային։ Ագրեսորների և նրանց հովանավորողների մերկացումը։ Պայքարը կոլեկտիվ անվտանգության համար։

ԽՍՀՄ-ն խաղաղության համար իր մղած պայքարում հենվում է իր տնտեսական կարողության վրա, հզոր Կարմիր Բանակի վրա, խորհրդային ժողովրդի բարոյական և քաղաքական միասնության վրա, պրոլետարիատի և խաղաղության կողմնակիցների վրա ամբողջ աշխարհում։



Խորհրդային կառավարության քաղաքականությունն ընդհանուր խաղաղության, ժողովուրդների անկախության և ազատության համար, ֆաշիստական ագրեսորների և զավթողների դեմ հետևողականորեն պայքարելու քաղաքականությունն է։

## 6. ՅԵԹԵ ԹՇՆԱՄԻՆ ՀԱՄԱՐՁԱԿՎԻ...

Թշնամուն կխփենք «այն տերիտորիայի վրա, վորտեղից նա յեկել է» (Վորոշիլով)։ Սամուրայական դաս ճապոնական սամուրայներին Խասան լճի շրջանում։ Առաջին Հատուկ Կարմրադրոշ բանակի սահմանապահների, մարտիկների, հրամանատարների, քաղաշխատողների հերոսությունը։

Մեր յերկիրն ունի հոյակապ տեխնիկայով հագեցված Կարմիր Բանակ, հզոր արդյունաբերություն, վորն ընդունակ է բանակին տալ ամեն տեսակի սպառազինություն։

Մեր բանակի հրամանատարները, քաղաշխատողները և մարտիկները միաձուլված են խորհրդային ժողովրդի, Լենինի-Ստալինի կուսակցության նկատմամբ հա-

վստահությամբ, հայրենիքի հանդեպ անսահման սիրով, նրա համար անձնուրացաբար կռվելու մարտական պատրաստակամությամբ:

## 7. ԴԵ՛ՊԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

Զգուշանալ, չհանգստանալ ձեռք բերածով:

«Մեծ հեղափոխության տարեդարձը տոնելու լավագույն յեղանակը—դա ուշադրությունը նրա չլուծված խնդիրների վրա սևեռելն է» (Լենին):

Յերևան հանել և մինչև վերջը վոչնչացնել տրոցկիստական— բուխարինական և ֆաշիստական այլ լրտեսների, վնասարարների, դիվերսանտների բոլոր հետնորդներին: Վերջնականապես լիկվիդացիայի յենթարկել վնասարարության հետևանքները: Անդուլ կերպով բարձրացնել զգոնությունը: Ուժեղացնել Կարմիր Բանակի և Ռազմա— Ծովային Նավատորմի կարողությունը, յերկրի պաշտպանությունը: Լինել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում:

Ե՛լ ավելի բարձրացնել սոցիալիստական



մրցման և նրա բարձրագույն ձևի՝ ստախանովյան շարժման, դրոշը:

Յերկրին տալ ավելի շատ մետաղ և մեքենաներ, ավելի շատ վառելանյութ և քիմիական պրոդուկտներ: Բարելավել թեթև արդյունաբերության աշխատանքը, բուռն կերպով ծավալել լայն սպառման առարկաների արտադրությունը: Ձգտել նոր հաղթանակների՝ սոցիալիստական դաշտերում, պայքարելով ստալինյան 7-8 միլիարդ փութ հացահատիկի համար: Կարմիր Բանակի հարազատ յեղբոր՝ տրանսպորտի աշխատանքը ե՛լ ավելի հստակ դարձնել:

Ավելի՛ բարձր խորհրդային ինտելիգենցիայի դերն ու նշանակությունը ամբողջ պետական ապարատում: «Ժողովուրդը գնահատում է իր ինտելիգենցիային, վորպես խորհրդային յերկրի աղը» («Պրավդա»):

Աշխատել ազնվաբար, բարեխղճորեն, սոցիալիստական շինարարության բոլոր ճակատամասերում: Ինքն իր մեջ դաստիարակել խորհրդային քաղաքացու ազնիվ հատկությունները, պայքար մղել մարդկանց գիտակցության մեջ կապիտա-

լիզմի մնացորդներն արմատախիլ անելու համար, սրբությամբ պահպանել սոցիալիստական համակեցության կանոնները և ՍՍՀՄ քաղաքացու սրբազան պարտականությունները:

ՀամԿ(բ)Կ պատմության կուրսի —բոլշևիկների կուսակցության և ամբողջ յերկրի կյանքում այդ խոշորագույն իրադարձության նշանակությունը: Ուսումնասիրել մարքսիզմ-լենինիզմի, գործողության մեջ յեղող լենինիզմի թեորիան, Լենինի-Ստալինի մեծ կուսակցության պատմությունը:

Ավելի սերտորեն համախմբվել բոլշևիկների և խորհրդային կառավարության շուրջը, ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը:

Լենինի-Ստալինի դրոշով դեպի նոր հաղթանակներ:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին. (ռուսերեն լեզվով) Խորհրդային իշխանության յերկու տարին. հ. 24-րդ, եջ՝ 522—530:

Վ. Ի. Լենին. Հոկտեմբերյան հեղափո-



խության չորսամյա տարեդարձի շուրջը. հ. 27-րդ, եջ՝ 24—30:

Ի. Ստալին. Հոկտեմբերյան հեղափոխությունը և ռուսական կոմունիստների տակտիկան. «Լենինիզմի հարցեր», եջ 75-101:

Ի. Ստալին. Հոկտեմբերյան հեղափոխությունը և ռուսական կոմունիստների տակտիկան. «Լենինիզմի հարցեր», եջ՝ 75—101:

Ի. Ստալին. ՍՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին: Զեկուցում Խորհուրդների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարում 1936 թվի նոյեմբերի 25-ին: Կուսհրատ, 1936 թ.:

Ի. Ստալին. Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիների լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին: Զեկուցում և յեզրափակման խոսք ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի պլենումում— 1937 թվի մարտի 3-5: Պետքաղհրատ. 1938 թ.:

Ի. Ստալին. Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1937 թ. դեկտեմբերի 11-ին Մեծ թատրոնում, Կուսհրատ. 1937 թ.:

Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը. *Կուսհրատ*, 1938 *թ.*:

Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրություն— (հիմնական օրենք). *Կուսհրատ*, 1938 *թ.*:

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմություն: *Համառոտ կուրս: Համկ(բ)կ ԿԿ-ի հանձնաժողովի խմբագրությամբ: Հավանություն է ստել Համկ(բ)կ ԿԿ-ի կողմից: 7-րդ և 12-րդ գլուխները: Պետքաղհրատ*, 1938 *թ.*:

Վ. Մ. Մոլոտով. *Հոկտեմբերյան հեղափոխության քսանամյակի շուրջը: Զեկուցում Մեծ թատրոնում կայացած հանդիսավոր նիստում* 1937 *թվի նոյեմբերի* 6-*ին*: *Կուսհրատ*, 1937 *թ.*:

Մ. Ի. Կալինին. *Ինչ տվեց աշխատավորներին խորհրդային իշխանությունը*: *Կուսհրատ*, 1937 *թ.*:

Մեր հայրենիքը: *Ն. Բարանսկու և Պ. Պոսպելովի խմբագրությամբ*. 3-*րդ հրատ. Պետքաղհրատ*, 1938 *թ.*:

ԽՍՀՄ և կապիտալիզմի յերկրները: *Լ.*



*Մեխլիսի, Յե. Վարգայի և Վ. Կարպինսկու խմբագրությամբ* 2-*րդ հրատ.*: *Պետքաղհրատ*, 1938 *թ.*:

Լիտվինովի *ճառերն Ազգերի լիգայի վերջին սեսիայում*: *«Պրավդա», սեպտեմբերի* 22-*ին*, 24-*ին և* 30-*ին*:

---



Պատ խմբագիր՝ Դ․ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ․ խմբ․ տեղակալ՝ ՀՐ․ ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչ Ա․ ԲԱՐՍԵՂՅԱՆ

Գլավլիտի լիազոր Ա—4080
Ստորագրված է տպագրության
1 նոյեմբերի, 1938 թ․
Պատվեր № 720 Տիրաժ՝ 6657։

---

«ԽՈՐՀ․ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ․ ՏՊԱՐԱՆ
ԵՐԵՎԱՆ